# ԱԶԳԱՅԻՆ ԻՆՔՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԽՆԴԻՐԸ ՀԱՅ-ԹՈՒՐՔԱԿԱՆ ՍԱՀՄԱՆԻ ԲԱՑՄԱՆ ՀԱՄԱՊԱՏԿԵՐՈՒՄ



Համաշխարհայնացման համատեքստում ի հայտ եկած հիմնախնդիրների շարքում առանձնահատուկ տեղ է զբաղեցնում պետությունների միջև փոխհարաբերությունների վերասահմանման հիմնախնդիրը: Մասնավորապես, երբ ազգային և մշակութային ինքնության (ինչպես նաև՝ ազգային պետության) հիմնախնդիրը ձեռք է բերել բարդ ու վիճարկելի բնույթ: Այն է՝ ***տեղային*** մշակույթների և ինքնությունների մեջ ***գլոբալ*** մշակույթների և ինքնությունների ներթափանցման արդյունքում տեղի է ունեցել լծորդումների և դիմադրության նոր ուժերի վերադասավորում:

Այսպիսով՝ ներքին ու արտաքին միջավայրերի փոփոխությունները հայ հասարակության և կառավարող շրջանների առջև դրել են նոր պայմաններին համարժեք ռազմավարական և մարտավարական ծրագիր մշակելու խնդրականը: Այս համատեքստում հույժ կարևոր իրողություններից է հայ-թուրքական սահմանի բացման՝ որպես երկու հակադիր (անգամ թշնամական) ինքնությունների (հնարավոր) փոխհարաբերությունների



անցումային իրողության հիմնախնդիրը: Ընդ որում՝ դա բարդ ու բազմաչափ երևույթ է, որը ներառում է զանազան լարվածություններ, հակամարտություններ և մակարդակներ:

Ուստի, հոդվածում փորձ է արվում ընդհանուր գծերով դիտարկել հայ ազգային ինքնության հիմնախնդիրը հայ-թուրքական փոխհարաբերությունների հնարավոր վերասահմանման-երկխոսության համատեքստում: Անհրաժեշտ փաստարկները վերցրել ենք ՀՀ նախագահ Սերժ Սարգսյանի (28.08.2008) և Թուրքիայի նախագահ Աբդուլա Գյուլի հետ թուրքական «Ռադիկալ» օրաթերթի (29.08.2008) հարցազրույցներից:

### «ՊԱՏՄԱԿԱՆ ՀԻՇՈՂՈՒԹՅԱՆ» ՀԻՄՆԱԽՆԴԻՐԸ

Այս համատեքստում՝ հայ-թուրքական հարաբերությունների միջև ընկած պատմական հիշողությունը բարդույթավորված է ըստ ***բացասական և կազմալուծող արժեքաևության Ցեղասպանության իրողության***: Այդ իսկ պատճառով պատմական հիշողությունը հսկայական ազդեցություն ունի հարաբերությունների կարգավորման վրա, որտեղ «հիշողությունը պարունակում է ճանաչողության ու իդենտիֆիկացման գործողություն՝ անչափ բարդ մտավոր պրոցես»[1]: Նկատենք, որ հարաբերությունների այդ բացասական արժեքանական կառույցի հիման վրա էլ ձևավորվել է թե՛ հայկական և թե՛ թուրքական ազգային ինքնությունը՝ երկուստեք կանգնեցնելով փակուղու առջև:

Եվ ահա, պատահական չէր, որ և՛ Հայաստանի, և՛ Թուրքիայի կողմից քայլ արվեց (և արվում է) հարաբերությունները վերանայելու և նորովի վերասահմանելու համար: Դա պայմանավորված է պատմական հիշողության՝ իբրև անցյալի արդիականացման նորովի մշակման հույժ անհրաժեշտությամբ: Այսպիսով՝ ***գիտակցվում է պատմական հիշողության և դրա վերաներկայացման (representation) դերակատար-***





***ման կարևորությունը հասարակության նորացման և ազգային առողջ մտահոգևոր կյանքի ձևավորման-կայացման խնդրում:*** Ինչպես Մ.Ֆուկոն է պնդում. «անցյալի իրականությունը պահպանվում է նրա վերաներկայացման արտեֆակտների մեջ»[2]: Մասնավորապես, երբ դրա վերարժևորման արդյունքում «անցյալի պատկերը» վերակառուցվում է ըստ ընթացող պահանջների և մարտահրավերների: Ուստի՝ ***անցյալը ոչ այնքան սոսկական ընտրություն է ըստ պահպանված հիշողությունների, որքան ըստ առաջադրված նպատակի: Այսու՝ հայ-թուրքական հարաբերությունների համատեքստում առկա է առանձին դեպքերի, երևույթների և արժեքների վրա շեշտադրման փոփոխության խնդրականը:***

Շեշտադրման այդ փոփոխությունը ***հայկական կողմի համար*** բոլորովին էլ «անցյալը մոռանալու» հաշվին չէ: Պարզապես «նախորդ զգացողությունները պետք է ոչ միայն կրկնվեն. նրանք պետք է նաև կարգավորվեն, տեղայնացվեն և համապատասխանեցվեն ժամանակի տարբեր պահերին»[3]: Այդ մոտեցումը ամրագրվել էր դեռ նախորդ վարչակարգի ժամանակ և այժմ վերահաստատվում է գործող նախագահ Ս.Սարգսյանի կողմից՝ որպես «Թուրքիայի հետ դիվանագիտական հարաբերությունների հաստատում՝ ***առանց որևէ նախապայմանի*** (ընդգծումը՝ Ս.Հ.)»[4] Վերջինիս մեջ արդեն առկա է «հիշողության վերանայման-նորացման» բոլորովին այլ չափույթի կառուցման փորձը: Այն է՝ ***եթե նախորդ ժամանակներում ազգային հիշողության մեջ Ցեղասպանության հիշողությունը «կալանավորել» էր Պատմությունը, ապա այժմ՝ Ցեղասպանության հիշողությունը համակարգի է բերվում Պատմության մեջ:***

***Թուրքական կողմի համար*** ուշագրավն այն է, որ «Ռադիկալի» հարցազրույցում Ա.Գյուլի կողմից ոչ մի անդրադարձ չկա ***Ցեղասպանությանը:*** Այն է՝ ժխտողական մոտեցումը կրկին ներկա է: Բայց իր խոսքում նա հիշատակում է

**Նախորդ ժամանակներում ազգային հիշողության մեջ Ցեղասպանության հիշողությունը «կալանավորել» էր Պատմությունը, ապա այժմ՝ Ցեղասպանության հիշողությունը համակարգի է բերվում Պատմության մեջ:**

Լեռնային Ղարաբաղի գործոնը, և «հակամարտությունների կարգավորումը երկխոսության միջոցով» բանաձևումը ուղղորդվում է դեպի Ղարաբաղի հիմնախնդիրը: Իսկ «ընդհանուր հիշողության» համատեքստում շեշտադրումը կատարվում է անցյալի վրա հետևյալ կտրվածքով. «Պատմության մեջ տարիներ ի վեր թուրքերն ու հայերը միասին գոյակցել են այս հողում: Այն աստիճանի, որ օսմանցիները «հավատարիմ ազգ» հորջորջեցին հայերին, պետական կարևոր պաշտոններում նշանակեցին նրանց: Ունեցել ենք դառը և քաղցր բազմաթիվ հուշեր»[5]: Ա.Գյուլի խոսքի համատեքստում անցյալը վերարժևորվում է «միասին գոյակցելու», «հավատարիմ ազգ» ու «դառը և քաղցր բազմաթիվ հուշեր» արտահայտությունների տեսքով: Ընդ որում, Ցեղասպանության իրողությունը վերարժևորվում է «դառը և քաղցր բազմաթիվ հուշերի» համատեքստում: Սակայն առավել հետաքրքիր է մյուս երկու արտահայտությունների իմաստային և նշանային համադրությունը, որտեղ «միասին գոյակցելու» համատեքստում հայկական կողմը վերարժևորվում է որպես «հավատարիմ ազգ»: Ակնհայտ է, որ վերջինիս («հավատարիմ ազգ») շեշտադրմամբ Թուրքիան հանդես է գալիս ***կայսերական անցյալով ու իմպերատիվով***: Իսկ իմպերատիվն առավել հստակ դրսևորվում է Ա.Գյուլի «Մենք (Թուրքիան՝ Ս.Հ.) տարածաշրջանում խնդիր լուծող երկիր ենք»[6] արտահայտության մեջ: Այս համատեքստում բոլորովին այլ հնչեղություն է ստանում Հայաստանի Հանրապետության սահմանների Թուրքիայի կողմից դեռևս չճանաչման իրողությունը: Այն է՝ ՀՀ-ն ինքնին դիտարկվում է սոսկ «կայսերական ամբողջության» բաղկացուցիչներից:

Ակնհայտ է, որ անցյալը բոլորովին էլ հիշողութենական ինքնաբավ կառույց չէ. այն ժամանակի ընթացքում փոխում է իր իմաստային կառույցը՝ ձգտելով «տարտամության» կամ «իմաստավորման»: Այսու՝ պատմական անցյալն ըմբռնվում է որպես կոլեկտիվ բանականություն և կոլեկտիվ հիշողություն, այն է՝ ինչ-ինչ տեղեկությունների հաղորդման (ինչպես նաև նորերի ընտրման) և պահպանման վերանձնական մեխանիզմ[7]: Իսկ իմաստային կառույցների վերարժևորման արդյունքում՝ կրկին «տարտամ անցյալականությունը վերածվում է պատմական անցյալի»[8]:

Այս համատեքստում, ***շրջադարձային այն է, որ հայ-թուրքական հարաբերությունները իշխանությունն արտաբերում է ոչ թե անցյալից՝ անցյալի մի հատվածի բացարձակեցմամբ, այլ՝ ապագայից.*** «այն ընդունում է ստեղծագործական և կառուցողական»[9] բնույթ: Այս փոխարկումը արտաքուստ թվում է պարզագույն մի գործողություն, սակայն իրականում այն խորքային բնույթ է կրում, և ապագայի դիտանկյունից խնդրին մոտենալով՝ բոլորովին այլ շերտեր են բացվում ներկայի համատեքստում: ***Սակայն քաղաքակրթական տեղաշարժի կարևոր դրսևորումը սոսկ հայացքի «անցյալից ներկա» փոխարինումը չէ «ապագայից ներկայով», այլ այդ երկուսի համադրումը***: Այս համատեքստում՝ վերջապես հայկական կողմը գործելու է ոչ պարզապես «վկայելու





համար», այլ շրջակա իրականության հետ հաստատում է «շարժուն և ակտիվ հարաբերություններ»[10]:

## «ՍԱՀՄԱՆԻ ԲԱՑՄԱՆ» ՀԻՄՆԱԽՆԴԻՐԸ

Արդի աշխարհաքաղաքական գործընթացների համատեքստում առավել, քան երբևէ կարևորվում է «սահման» հղացքի վերիմաստավորումը: Մասնավորապես վերջին տարիներին հետազոտական հատուկ սևեռումի խնդիր է դարձել սահմանի ինքնութենական, մշակութային և քաղաքակրթական չափումի մշակումը: Այն է՝ ձեռք է բերել առտնին, քաղաքական ընկալումներից վեր բազմաչափ բովանդակություն:

Այսու, հայ-թուրքական հարաբերությունների համատեքստում սահմանն ունի հիմնարար նշանակություն, որքանով ենթադրում է ***համակեցական ինքնության նոր մակարդակ***: Ցայժմ հարաբերությունները կազմակերպված են եղել ըստ միմյանց ներհակ բովանդակության: Հետևաբար՝ ըստ այդ ներհակության էլ երկուստեք որոշարկել են իրենց ազգային ինքնությունը, երբ «յուրաքանչյուր ինքնաբավ «մենք» մյուսին վերաբերվում է իբրև հակադիր արժեբանությամբ կառուցված «նրանք»-ի»[11]: Այն է՝ ակտիվ է սահմանազատման «մենք-նրանք» ավանդական հարացույցը:

Այսպարագային՝ սահմանի ըմբռնումը հանդես է գալիս երկիմաստությամբ. «մի կողմից՝ բաժանում է, մյուս կողմից՝ միավորում»[12]: Սահմանի ըմբռնման այս երկփեղկվածությունը Ս.Սարգսյանի տեքստում առկա է մի կողմից՝ որպես «բանական հարաբերությունների» հաստատում (***միավորող***), և մյուս կողմից՝ «հարևանների փոխհարաբերությունները [...] չպետք է ընկալվեն որպես ***հակառակ կողմին*** արված սիրալիրություն (ընդգծումը՝ Ս.Հ.)» (***բաժանարար***)[13] արտահայտությունների տեսքով:

Այդ երկփեղկվածությունը առկա է և Ա.Գյուլի ձևակերպումներում. մի կողմից՝ «անվտանգ միջավայրի ստեղծում» (***միավորող***), մյուս կողմից՝ «էթնիկապես և կրոնով տարբեր» (***բաժանարար***)[14]: Ուշագրավ է, որ երկու դեպքում էլ սահմանի ըմբռնումը մեծապես (ուղղակի, թե անուղղակի) լծորդվում է «պատմական հիշողությանը»: Բաժանարար գիծը (բացասական բևեռը) ակտիվ դրսևորվում է հենց «հիշողության» մակարդակում: Այն առկա է երկու նախագահների մոտ էլ. Ս.Սարգսյանի մոտ՝ ըստ «մեզ համար շատ կարևոր է խաղաղությունն ու կայունությունը», իսկ Ա.Գյուլի մոտ՝ ըստ «անվտանգ միջավայրի ստեղծում» ձևակերպումների:

**Քաղաքակրթական տեղաշարժի կարևոր դրսևորումը սոսկ հայացքի «անցյալից ներկա» փոխարինումը չէ «ապագայից ներկայով», այլ այդ երկուսի համադրումը:**

Այս համատեքստում՝ ակնհայտ է սահմանի «ոչ աշխարհագրական» ըմբռնման իրողությունը: Թեկուզ Ս.Սարգսյանը «Արևելյան-Արևմտյան Հայաստան արտահայտությունը» որակում է որպես «աշխարհագրական եզրեր», ինչպես «պատմական աշխարհագրական շատ տերմինների» դեպքում է[15]: Այսու՝ սահմանի ըմբռնումը հայկական կողմի համար ունի կրկնակի նշանակություն. մի կողմից՝ սահմանից այն կողմ **Էրգիրն** է՝ «Պատմական Հայաստանը», սրբազան այն տիրույթը, որի մի մասն է Հայաստանի Հանրապետությունը, մյուս կողմից՝ հակառակորդ, թշնամական տարածությունը: Այս հետնախորքի վրա արդեն իսկ ուրվագծվում է «***ներունակ մի պարածություն***», որտեղ օբյեկտիվն ու սուբյեկտիվը գոյություն ունեն համատեղ: Այն է՝ «վերմշակութային» մի իրողություն, որի տիրույթում պայքար է ծավալվում «ինքնարոնման և ինքնակեցության համար»[16]: Այսու՝ «ներունակ տարածությունը» ոչ միայն ***միասնականացնում***, այլև ***պարանջատում է***: Տարանջատման իրողությունը դրսևորված է և թուրք լրագրողի հարցադրման մեջ. «Դուք (այն է՝ Ս.Սարգսյանը – Ս.Հ.)







մտածո՞ւմ եք, որ մի օր Թուրքիայում ***այնպես կհյուրընկալվեք, ինչպես հյուրընկալվում են*** Ադրբեջանի ու Վրաստանի ղեկավարները (ընդգծումը՝ Ս.Հ.)»[17]: Ստացվում է՝ սահմանից այն կողմ միաժամանակ գոյություն ունեն երկու տարբեր և միմյանց հակադիր աշխարհներ՝ տարածական որոշակի գոտիներ, որոնցով պայմանավորվում է ինչպես անհատական, այնպես էլ կոլեկտիվ գիտակցությունն ու ինքնությունը:

Ուստի՝ «սահմանի բացումը» հանդես է գալիս որպես «սահմանի խախտում»: Այն է՝ համակեցական նոր մակարդակ:

***Այստեղ կարևորն այն է, որ երբ «խախտում» ենք սահմանը կամ ստեղծում ենք «սահմանային իրադրություն», ապա պետք է ստեղծենք ճանաչման, ըմբռնման նոր մի հարացույց, տեսություն: Եվ այն պետք է ներունակ լինի ոչ միայն փոխարինելու նախորդ «սահմանափակ» հարացույցին կամ տեսությանը, այլև՝ ապահովի «անվտանգությունը»: Այս դեպքում հնարավոր կլինի սահմանի՝ որպես«բաժանարարի» հաղթահարումը և այն արդեն որպես «անցում» դիտարկելը:***

## ՀԱՂԹԱՀԱՐՄԱՆ ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐԱՑՈՒՅՑԸ՝ «ՖՈՒՏԲՈԼԱՅԻՆ ԴԻՎԱՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ»

Միշտ էլ դժվար է տարածաշրջանային հակամարտությունների, քաղաքական հակասությունների, մշակութային տարբերությունների, պատմական բարդույթների համատեքստում փոխհարաբերությունների դրական կողմնորոշմամբ վերասահմանումը: Մասնավորապես, երբ դրա շրջանակներում ծավալվող համագործակցության տարասեռ դրսևորումները լծորդված են դեռևս չհաղթահարված բազմաթիվ լարվածություններին: Ուստի՝ հույժ անհրաժեշտ նախապայմաններից է դրան միտված հարացույցների, հայեցակարգերի և տեսությունների մշակման գործընթացը, ինչի արդյունքում հնարավոր կլինի ուրվագծել ոչ միայն հարաբերությունների ներքին բովանդակությունը, այլև դրանց առաջնահերթության սանդղակը:

**Կարևորն այն է, որ երբ «խախտում» ենք սահմանը կամ ստեղծում ենք «սահմանային իրադրություն», ապա պետք է ստեղծենք ճանաչման, ըմբռնման նոր մի հարացույց, տեսություն: Եվ այն պետք է ներունակ լինի ոչ միայն փոխարինելու նախորդ «սահմանափակ» հարացույցին կամ տեսությանը, այլև՝ ապահովի «անվտանգությունը»:**

Այսպես, տարածաշրջանային փոխակերպումների արդյունքում որոշակիորեն ուրվագծվել է դրա հաղթահարման առնվազն երկու հարացույց՝ հայկական (խաղային) և թուրքական (քաղաքական առասպել) տարբերակները: Նկատենք, սակայն, որ հայկական կողմին վերագրելով «խաղային», իսկ թուրքական կողմին՝ «քաղաքական առասպել» հարացույցը, բնավ էլ չի նշանակում, թե դրանք բացարձակ են սոսկ մի կողմի համար. ընդհակառակը, «խաղային հարացույցի» մեջ ևս առկա է «քաղաքական առասպելի հարացույցը», իսկ «քաղաքական առասպելի հարացույցի» մեջ՝ «խաղայինը»: Այն է՝ դրանք միշտ էլ հանդես են գալիս փոխկապակցված և լրացնում են միմյանց:

Դեռևս ***Յ.Հայզինգան*** նկատել էր ***«խաղի»*** և ***«լրջության»*** հակադրությունը, որտեղ կարևորվում է այն, որ խաղը «սովորական» կամ «իսկական» կյանքը չէ. «Խաղը դրանից դուրս ելնելն է հատուկ նպատակ ունեցող ժամանակավոր գործունեության ոլորտ»[18]: Այսու՝ խաղային գործոնի ակտիվացումը նշանակում է «անբավարարվածության զգացում այն իրադրությունից, որի մեջ գտնվում են իրականում, և փորձ՝ այդ անբավարարվածությունը հատուցելու ոչ թե պրակտիկ միջոցներով, ոչ թե սոսկ առկա իրողությունների համար առավել բավարար վիճակներ ստեղծելով, այլ երևակայելով իրերի ավելի գոհացուցիչ վիճակ և հասնելով մի բավարարվածության, որ դուրս է առկա իրականությունից»[19]: Մյուս կողմից՝ «Խաղը մի զվարճանք է, իր իսկ մարմնականությունից ձերբազատված ուրվագիծ: Մասնավորապես՝ ինչ-որ արմատական նոր տեխնոլոգիաների ներդրումներից հետո հարաբերությունների անհրաժեշտ փոխակերպությունների շրջափուլում»[20]:

Ս.Սարգսյանի կողմից առաջադրված ***«Ֆուտբոլային դիվանագիտությունը»***[21] յուրօրինակ «քաղաքական մի խաղ է», որը հնարավորություն է տալիս առկա լարվածությունը ոչ միայն մեղմացնել, այլև «հասարակությունների հակազդեցությունների և գործողությունների ամբողջականացումը մեկ միասնական դինամիկ պատկերի մեջ»՝ «վերածվելով մշակույթների ճշգրիտ մոդելների»[22]: Այս առումով ՀՀ-ի համար «առկա իրողությունների համար առավել բավարար վիճակների» համատեքստում առանձնանում է «Թուրքիայի, Վրաստանի և Ադրբեջանի միջև էներգետիկ և հաղորդակցության բնագավառում իրականացվող տարածաշրջանային նախագծերի» (թուրք լրագրող Մուրադ Եթքինի ձևակերպումը) մեջ ներառելու հեռանկարը: Հեռանկար, որի մեջ եթե «տարածաշրջանի բոլոր երկրները չեն ներգրավվում կամ դրանցից մեկը բա-



ցառվում է, դա նոր բաժանարար գծեր է առաջացնում» (Ս.Սարգսյան)[23]:

Սակայն Ս.Սարգսյանի առաջարկած «ֆուտբոլային դիվանագիտության» առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ այն «ցանկության թելադրանքով գործող երևակայություն» չէ, ոչ էլ սոսկ «երևակայված իրադրությունը իրականացնելու ձգտում» կամ «իրական տեսնելու ցանկություն»: Այստեղ կարևորն այն է, որ «ֆուտբոլային դիվանագիտության» խաղարկման արդյունքում ի հայտ են գալիս հայ-թուրքական հարաբերությունների կարգավորման հիմնախնդիրների հնարավոր լուծման բազմաթիվ մոդելներ: Այսպիսով, այն մի յուրօրինակ «կրկնվող խաղ» (stage game) է, որի մասնակիցները խաղում են նույն խաղը բազմաթիվ անգամներ: Այն է՝ եթե խաղը կարող է կրկնվել բազմաթիվ անգամներ, ապա դրա արդյունքում դրսևորվում են հարաբերությունների կարգավորման բազմաթիվ «հավասարակշռություններ» (равновесие по Нэшу): Իսկ որպեսզի «խաղային ոգին» իրոք պահպանվի և լինի ամբողջական, անհրաժեշտ է և երկրորդ կողմի ոչ միայն ներկայությունը, այլև՝ փոխազդեցությունը: Այն է՝ «անհրաժեշտ է ամբողջական իրավիճակից բաժանվեն որպես դրա մոդելներ»[24]: Թուրքիան, այդուամենայնիվ, փոխադարձեց հրավերը՝ «գնդակը» կրկին անցավ Հայաստանի «դաշտը»:

***Այսու՝ «ֆուտբոլային դիվանագիտությունը» հաղորդակցական մի տարատեսակ է, որի շրջանակներում Հայաստանը չի «խաղում այն դերը», որը նրան պարտադրված էր ավանդաբար, կամ էլ «խաղում է այն դերը», որը պարտադրված է արդիության կողմից: Երկու դեպքում էլ «խաղը» հանդես է գալիս որպես «հորինված վերահսկելի իրավիճակ, կամ խմբային ինքնագիտակցության ընդլայնում, որը կարճատև դադար է հաղորդում առօրեական օրինակներին: Դա ողջ հասարակության ինքն իր հետ յուրօրինակ զրույց է»[25]: Վերջինի դեպքում հնարավորությունների տիրույթն այլևս սահմանափակ կամ միակողմանի չէ: Այն է՝ ուրվագծվում են բազմաթիվ հնարավորությունների տիրույթներ: Եվ, որ կարևոր է, «ֆուտբոլային դիվանագիտության» ընձեռած հաղորդակցության շնորհիվ մեր հարևանը (հարևանները) այլևս մեզ համար սոսկ սուբյեկտիվ պատրանք չէ (չեն), այլ՝ իրականություն: Այստեղից՝ այն նշանակությունը, որը հաղորդվում է բարդ և շարժուն փոխհարաբերությունների հյուսվածքին, ինչպես երբեք. «մերժողական կաթվածը» փոխարինվում է խաղակիցների հնարամտությունների ճկուն «տեղաշարժերով»:***

## ՀԱՂԹԱՀԱՐՄԱՆ ԹՈՒՐՔԱԿԱՆ ՀԱՐԱՑՈՒՅՑԸ՝ «ԿՈՎԿԱՍԻ ՊԼԱՏՖՈՐՄԸ»

Թուրքիան ևս կանգնած է քաղաքական ռազմավարության (գուցե մարտավարությա՞ն) փոփոխության հիմնավորման և օրինականացման հիմնախնդրի առջև: Այս առումով թուրքական հարացույցի առանձնահատկությունը «քաղաքական առասպելի» կիրարկումն է. «Արդի քաղաքական առասպելները գործում են բոլորովին այլ կերպ: Դրանք չեն սկսում ինչ-որ գործողությունների հավանություն տալուց կամ արգելելուց: Այլ՝ սկզբում փոփոխում են մարդկանց, որպեսզի հետո հնարավորություն ունենան կարգավորել և կառավարել նրանց գործունեությունը»[26]: Դա ևս կարևորվում է հասարակական գիտակցության դիտանկյունից: Իսկ քաղաքական առասպելները լավագույն միջոցն են քաղաքական որոշումների օրինականացման համար. «պատումը (նառատիվը) օրինականացնում է պատմական տրամասույթը (դիսկուրսը)՝ ճանապարհ հարթելով առասպելաբանական ինտենցիաների համար»[27]: Այն է՝ քաղաքական առասպելը «իրադարձության կարևորագույն դիտանկյունների խտացված վերարտադրությունն է»[28]:

Այստեղ, սակայն, կարևորն այն չէ, թե «քաղաքական առասպելի» մեջ «պատմական փաստերը» որքանով են ներկա, այլ՝ «պատմական փաստերի» ինչպիսի համակազմն է ակտիվացված և մեկնաբանված. «պատմությունն այստեղ ոչ միայն ինքն իրեն չի նմանվում, այլև, ընդհակառակը, այդ չնմանվելն օգտագործում է առասպելական տարածությունից դուրս» գալու համար, ուր «արդեն պետք չէ հակադրվել փաստերին»[29]:

Սովորաբար քաղաքական առասպելի կառույցի մեջ հետազոտողներն առանձնացնում են հետևյալ երեք բաղկացուցիչները՝

● ինչ-որ փորձառնական իրավիճակի արքետիպը (սոցիալական կարգավորման և հարկադրման չափորոշիչների կենսագործմանը վերաբերվող),

● կոնկրետ փորձառնության բովանդակություն՝ տվյալ արքետիպով միավորված իրավիճակներից փորձնականում ստուգված,

● այլաբանական պատկերների համակարգ, որի գործնական խորհրդանիշը «ցանկալին» հարադրում է «անհրաժեշտի հետ», այն է՝ արքետիպով մշակվածին[30]:

Այս չափորոշիչների դիտանկյունից այդպիսի քաղաքական առասպել է Թուրքիայի առաջադրած «Կովկասյան կայունության և համագործակցության պլատֆորմ» ծրագիրը: «Ռադիկալի» հարցազրույցում (թեկուզ շատ համառոտ և սեղմ ձևակերպումներով) Ա.Գյուլը ևս իր խոսքը կառուցելիս դիմում է քաղաքական առասպելի ստեղծման տեխնոլոգիական միջոցներին: Նրա խոսքի մեջ որպես «ինչ-որ փորձառնական իրավիճակի արքետիպ» հանդես է գալիս «Այս տարածաշրջանը մեր բոլորի տարածաշրջանն է: ***Բոլորս միևնույն հողի զավակներն ենք*** (ընդգծումը՝ Ս.Հ.)»[31] բանաձևումը: Որպես «կոնկրետ փորձառնության բովանդակություն»՝ Ա.Գյուլն ակտիվացնում է անցյալի հիշողութենական դաշտի դրական բևեռը. «Պատմության մեջ թուրքերն ու հայերը միասին գոյակցել են այս հողում: Այն աստիճան, որ օսմանցիները «հավատարիմ ազգ» հորջորջեցին հայերին, պետական կարևոր պաշտոններում նշանակեցին նրանց»[32]: Իսկ «այլաբանական պատկերների համակարգի» դեպքում՝ «անվտանգ միջավայրի ստեղծման»[33] հեռանկարի հրատապայնացմամբ, երբ «ցանկալին հարադրվում է անհրաժեշտին»:

Ինչպես Է.Կասսիրերն է նկատում. «Նոր քաղաքական առասպելները չեն ստեղծվում ինքնաբերաբար: Դրանք սանձարձակ երևակայության վայրենի ծնունդներ չեն: Ընդհակառակը, դրանք արվեստական ստեղծագործություններ են՝ հմուտ և ճարտար «վարպետների» ստեղծածը»[34]: Այսու՝ թուրքական հարացույցը ևս նման մշակվածություն անցած ծրագիր է, որի համար նախադեպային են դեռ 1920-ական թվականներին Թուրքիայի և իշխանությունը կորցրած ՀՅ Դաշնակցության համատեղ «Պրոմեթեյ» ծրագիրն է: Սակայն քաղաքական առասպելի ընկալելի և ըմբռնելի լինելու համար չափազանց կարևոր է համապատասխան միջավայրի առկայությունը, որը համահունչ է տվյալ պայմաններին[35]:

Հարցի մեկ այլ կողմն է ստեղծված ճգնաժամի հաղթահարման «պատմական առաքելության» խնդրականը, որն



ըստ թուրքական քաղաքական առասպելի, ստանձնում է Թուրքիան՝ որպես «տարածաշրջանում խնդիր լուծող երկիր»: Այս համատեքստում կրկին դրսևորվում է «կայսերական» առասպելը:

***Այսպիսով, «Կովկասի պլատֆորմն» ըստ ձևի և բովանդակության առասպելական մի տեքստ է, որտեղ իմաստները փոխանցվում են ոչ այնքան և ոչ միայն ռացիոնալ հասկացությունների օգնությամբ, որքան խորհրդանիշներով հագեցած զգացմունքների իռացիոնալ դրսևորմամբ:***

Ուրվագծվող հեռանկարը լինելով խիստ տրամաբանական, այդուամենայնիվ, իր արտաքին գրավչության կողքին առավել քան կարևորում է Թուրքիայի դերակատարումը: Մի բան, որի համատեքստում ապագան կամ համագործակցության հնարավորությունն արտաբերվում է հակադարձ համեմատականով՝ բացասական արժեքանությամբ: Ուշագրավ է, որ հայկական կողմի առաջադրած «ֆուտբոլային դիվանագիտությունը» հնարավորություն է տալիս հաղթահարել այդ «լռջությունը» (Ղարաբաղի համատեքստում արդեն ունենք նախադեպը):

## ԱՄՓՈՓՈՒՄ

Ի մի բերելով վերոշարադրյալը՝ ակնհայտ է, որ հայ-թուրքական հարաբերություններում ի հայտ եկած տեղաշարժի արդյունքում ուրվագծվել է փոխհարաբերությունների նոր համակարգի մշակման հիմնախնդիրը: Անկախ նրանից՝ կբացվի հայ-թուրքական սահմանը (կճանաչի Թուրքիան Ցեղասպանությունը), թե ոչ, արդեն փաստ է հարաբերությունների նախկին կերպի փոխակերպումը: Խորքային մի տեղաշարժ, որի հետնախորքի վրա՝ շնորհիվ ծավալվող քննարկումների, ավելի հստակ են ուրվագծվում ոչ միայն զարգացման կամ հակասությունների միտումները, այլև՝ դրանց պատճառների հիմնավորումներն ու կանխատեսումները:

Ձևավորվել է նոր վերաբերմունք իրականության, «նոր վստահություն» կեցության նկատմամբ: Հաղթահարման «ճեղքումը» հայկական կողմի համար արտահայտվում է Ցեղասպանության ըմբռնման ավանդական միակողմանի տարբերակին զուգահեռ նոր հարացույցի առաջացման մեջ: Այն է՝ ***պատմության «հուզական կապանքներից» ձերբազատվելու և արտաշխարհի իրականության հետ արդյունական և հեռանկարային հարաբերությունների վերակառուցման մեջ: Նախկին «սահմանային իրավիճակից» անցում է կատարվում դեպի «կեցություն», որից՝ «համակեցություն»: Հնարավոր է դառնում ազգային ինքնության «արդիականացման գործընթացը սնուցող միջավայրի» ձևավորումը:***

Նման փոխակերպության արդյու-





[illegible]ությունն ապահովելու համար անհրաժեշտ է փոխակերպել և միջոցները, որոնցով իրականացվում է դա: Այն է` աշխարհատեսությունը և գործնական քայլերը, որոնցով կազմակերպվում և վերարտադրվում են տվյալ հանրույթները: Այստ` հույժ անհրաժեշտ իրողություն է դարձել ազգային ինքնության դրական բևեռի (***Ազգային Գերխնդրի***) մշակումը: Այդպես հնարավոր կլինի ազգի սոցիալ-հոգեբանական, քաղաքական, տնտեսական և մշակութային-քաղաքակրթական ռիթմերի միասնության ապահովումը: Հայ-թուրքական սահմանի բացման հիմնախնդիրը սոսկ աշխարհագրական փոխակերպություն չէ, այն յուրօրինակ «էկզիստենցիալ վիճակ է», որի համատեքստում ուրվագծվել են իրավաքաղաքական, տնտեսական և մշակութային շարժընթացների պատկերացումների ու կարծրակերպերի աստիճանական վերափոխման գործընթացները: Այս պարագայում հույժ կարևորվում է հայ-թուրքական հարաբերությունների իրեն հետազոտական հիմնախնդիր ձևակերպելու անհրաժեշտությունը: Խնդիրն առավել քան բարդ է. խոսքը երկու հակամետ (անգամ` բշնամական) ինքնությունների և քաղաքակրթությունների համադրելիության մասին է:

Վերոշարադրյալի ամբողջականացման դիտանկյունից տեղին է հետևյալ մեջբերումը Պլատոնից. «Եվ արդ, հիրավի, մարդկային գործերն արժանի չեն չափազանց լուրջ վերաբերմունքի (megales men spades ouk axia), սակայն անխուսափելի է լրջությունը. և դրանում է մեր դժբախտությունը (Պլատոն, Օրենքները, 803:b)»[36]: ***ՍԳ***


1. ***Է. Կասսիրեր,*** Էսսե մարդու մասին, Ե., Սարգիս Խաչենց&Փրինթինֆո, 2008, էջ 80:
2. ***М.Фуко,*** Археология знания, Киев: Ника-Центр, 1996.
3. ***Է. Կասսիրեր,*** անդ, էջ 80:
4. «***Ազգ***» օրաթերթ, 2008, օգոստոսի 28, URL:/ **http://www.azg.am/AR/2008082901:**
5. «***Ազգ***» օրաթերթ, 2008, օգոստոսի 29, URL:/**http://www.azg.am/AR/2008083001:**
6. ***Անդ:***
7. ***Ю. Лотман,*** Память в культурологическом освещении, Семиосфера, С.-Петербург: «Искусство—СПБ», 2000, с. 673.
8. ***Ա. Սարեփանյան,*** Պատմությունն իբրև տեքստ (մեկնության և գրության հնարավորություն), Պատմություն և կրթություն, 1-2, (2005), էջ 10:
9. ***Է. Կասսիրեր,*** անդ, էջ 81:
10. ***Ա. Սարեփանյան,*** Ինքնության ազգային չափումը [Նախնական դատողություններ], Ինքնության հարցեր, Տարեգիրք, Խմբ. Ա.Ստեփանյան, Ե., 2002, էջ 29:
11. ***Ա. Սարեփանյան,*** անդ, էջ 14:
12. ***Ю.М.Лотман,*** Семиосфера С.-Петербург, Издательство: Искусство-СПБ, 2000, с. 262.
13. «***Ազգ***» օրաթերթ, 2008, օգոստոսի 28, URL:/ **http://www.azg.am/AR/2008082901:**
14. «***Ազգ***» օրաթերթ, 2008, օգոստոսի 29, URL:/**http://www.azg.am/AR/2008083001:**
15. «***Ազգ***» օրաթերթ, 2008, օգոստոսի 28, URL:/ **http://www.azg.am/AR/2008082901:**
16. Schmidt M. Individuation: finding oneself in analysis – taking risks and making sacrifices // *Journal of Analytical Psychology*, 50 (5), 2005, p. 612.
17. «***Ազգ***» օրաթերթ, 2008, օգոստոսի 28, URL:/ **http://www.azg.am/AR/2008082901:**
18. ***Յ. Հայզինգա,*** Homo Ludens. մշակույթի խաղային տարրի սահմանման փորձ, Ե., Սարգիս Խաչենց&Փրինթինֆո, 2007, էջ 17:
19. ***Ռ.Ջ.Քոլլինգվուդ,*** Արվեստի հիմունքներ, Ե., Սարգիս Խաչենց&Փրինթինֆո, 2007, էջ 171:
20. ***М.Маклюэн***, Понимание медиа: внешние расширения человека. — М.: Канон-Пресс/Кучково поле, 2003, с. 272.
21. 2008 թվականի հունիսի 23-ին ՀՀ նախագահ Ս.Սարգսյանը Թուրքիայի նախագահ Ա.Գյուլին Երևան հրավիրելու մասին դիտարկում արեց. «միասին դիտելու Հայաստանի և Թուրքիայի ֆուտբոլի հավաքական խաղը» («Հայաստանի Հանրապետություն», օրաթերթ, 25.06.2008): Այս «հրավերը» շուտով որակվեց որպես «ֆուտբոլային դիվանագիտություն»:
22. ***М.Маклюэн***, указ. соч., с. 267.
23. «***Ազգ***» օրաթերթ, 2008, օգոստոսի 28, URL:/ **http://www.azg.am/AR/2008082901:**
24. ***М.Маклюэн***, указ. соч., с. 274.
25. ***Անդ***, с. 277.
26. ***Э.Кассирер***, Техника современных политических мифов, Политология: хрестоматия / Сост. проф. М.А. Василик, доц. М.С. Вершинин. — М.: Гардарики, 2000, с. 583.
27. ***Ю.В.Шатин,*** Политический миф и его художественная деконструкция, URL:/http://www.philology.ru/literature2/shatin-03a.htm; 19,01,2009.
28. Ch.***Bottici and*** **B.Challand,** Rethiking Political Myth, The Clash of Civilizations as a Self-Fulfilling Prophecy, European Journal of Social Theory, Vol. 9, No. 3, (2006), p. 320.
29. ***Անդ:***
30. ***А.Савельев***, Политическая мифология, URL:/http://savelev.ru/book/?ch=340, 29,01,2009.
31. «***Ազգ***» օրաթերթ, 2008, օգոստոսի 29, URL:/**http://www.azg.am/AR/2008083001:**
32. ***Անդ:***
33. ***Անդ:***
34. ***Э.Кассирер***, указ. соч., с. 580.
35. Ch.***Bottici and*** **B.Challand,** op. cit., p. 143.
36. Plato, Laws, URL://http://www.perseus.tufts.edu/hopper/text.jsp?doc=Perseus:text:1999.01.0165:book=8:section=848d, (ἔστι δὴ τοίνυν τὰ τῶν ἀνθρώπων πράγματα μεγάλης μὲν σπουδῆς οὐκ ἄξια, ἀναγκαῖόν γε μὴν σπουδάζειν: τοῦτο δὲ οὐκ εὐτυχές.):

Վերոհիշյալ հատվածի գրաբարյան թարգմանությունը հետևյալն է. «Եւ արդ այսուհետեւ մարդկան իրողութիւնս մեծի ի փութոյ ոչ արժանի` սակայն հարկաւոր է փութալ, եւ այս ոչ բարեբաստ» (Պղատոն, Յաղագս օրինաց եւ մինովս, Տրամախօսութիւնք, Ի Վենետիկ, Ի Մխիթարեան տպարան, 1890, էջ 245):



ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՄՏՔԻ ԱՄԲԻՈՆ
www.nationalidea.am

№ 1 (11)
փետրվար 2010

# ԱԶԳԱՅԻՆ ԳԱՂԱՓԱՐ



## ԴԱՏԱՊԱՐՏՎԱԾՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՆՑ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱՊԱԳԱՅԻ

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՆՈՐ ԻՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՇՀԿ-Ն ՈՐՊԵՍ ԱՇԽԱՐՀԱՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ԱՇԽԱՐՀԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՖԵՆՈՄԵՆ. ՀԻՄՆԱԽՆԴԻՐՆԵՐԸ, ՖՈՒՆԿՑԻՈՆԱԼՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՊԱՏՄԱԿԱՆ ՇԱՆՍԸ

## ՖԵԴԵՐԻԿՈ ՖԵԼԻՆԻ – 90

## ԱՎԵԼԻ ԽՈՐՀՐԴԱՎՈՐ, ՔԱՆ ՏԻԵԶԵՐՔԸ

